Մակրուհի. Makrouhy; Virginie, f.
Մենտոր. Mentor, m.
Մեդիա. Medie, f.
Մերիոն. Merion, m.
Մերուժան. Mérujan, m.
Մելիտոն. Mélitou, m.
Մեսրոպ. Mesrobe, m.
Միհրան. Mihran, m.
Միհրդատ. Mithridate.
Մինոս. Minos, m.
Մինաս. Minas, m.
Միքայէլ. Michel, m.
Մկրտիչ. Baptiste, m.
Մոսկով, Moscovite.
Մովսէս. Moïse, m.
Մորփէոս. Morphée, m.
Մուշեղ. Moucheheg, m.

## Յ

Յաբէթ. Japhet, m.
Յակոբ. / Յակովբոս. {Jacques, m.
Յարութիւն. Pascal; (Résurrection), m.
Յեսու. Josué, m.
ՅԻՍՈՒՍ. JESUS.
Յոհան կամ Յոհաննէս. Jean, m.
Յոհաննա. Jeanne, f.
Յոյն. Grec, que.
Յոբ. Job, m.
Յովնան. Jonas, m.
Յովսէփ. Joseph, m.
Յուդա. Judas, m.
Յուդիթ. Judith, f.
Յուլիանոս. Julien, m.
Յուլիոս. Jalas.
Յուլիա. Julie, f.
Յունիս. Juin.
Յուստինիանոս. Justinien, m.
Յուստինէ. Justine, f.

## Ն

Նաբուգոդոնոսոր. Nabucodonosor, m.
Նազէնի. Nazénie, f.
Նարբալ. Narbal, m.
Նարկիզ. Narcis, f.
Նարդուհի. Nardouhi, f.
Նափոլիտցի, Napolitain, e.
Նեսոս. Nessus, m.
Նեստոր. Nestor, m.
Ներէիդ. Néréide, m.
Ներսեհ. Nerseh, m.
Ներսէս. Nersès, m.
Նէկտար. Negtar, f.
Նէոպտողեմոս. Néoptolème, m.
Նէվրէստէ. Névréstée, f.
Նէվրիկ. Névrigue, f.
Նիկողիմոս. Nicodème, m.
Նիկոմէդ. Nicomède, m.
Նինոս. Ninus, m.
Նիւքար. Nukar, m.
Նոյ. Noé, m.
Նոյէմզար. Noémzare, f.
Նորվեկիացի, Norvégien, nne.
Նունիա. Nounie, f.
Նուպար, Nubar, m.
Նուրիշահ. Nourichahe, f.
Նուրիճան. Nouridjan, m.

## Շ

Շահապպաս. Chahappas, m.
Շահինար. Chahinar. Célina, f.
Շահնազար. Chahnazar, m.
Շամիրամ. Semiramis, f.
Շապուհ. Sabor, m.
Շարա. Chara, f.
Շմավոն. François, m.
Շուէտացի, Suédois, e.
Շուշան. Suzanne, f.

## Ո

Ոգուհի. Okouhy, f.
Ոդիսևս. Ulysse, m.
Ողիմպոս. Olympe.
Ոսկի. Orky, f. (Or).
Որատիոս. Horace, m.
Որեստէս. Oreste, m.
Որմիզդաս. Hormisdas.
Որփէոն. Orphéon, m.

## Պ

Պայրոն. Byron, m.
Պանդորա. Pendor, f.
Պապ. Pape, m.

Պարսիկ, Perse ou Persan, e.
Պարթեւ. Parthe, m.
Պարկայք. Trois Graces.
Պաւարիացի, Bavarois, e.
Պաքոս. Bacchus, m.
Պետրոս. Pierre, m.
Պերնարտոս. Bernard, m.
Պերոզ. Peroses, m.
Պերսոփոնէ. Persophion, f.
Պիղատոս. Pilate, m.
Պիգմալիոն. Pygmalion,
Պիոս. Pie, m.
Պիսիստրատ. Pisistrate, m.
Պիւթագոր. Pythagore, m.
Պիւռոս. Pyrrus, m.
Պլինիոս. Pline, m.
Պլուտոն. Pluton, m.
Պղատոն. Platon, m.
Պղուտարքոս. Plutarque. m.
Պոլիմենէ. Polymène, m.
Պոլիդամոս. Polidamus, m.
Պոմպէոս. Pompée, m.
Պոսիդոն. Neptune, m.
Բուլղար, Bulgare.
Պտղոմէոս. Ptolomée, m.
Պրոմեթէ. Promethée.
Պրոտեսիլաս. Protesilas, m.
Պօղոս. Paul, m.

## Ռ

Ռափայէլ. Raphael, m.
Ռոմանոս. Romain, e.
Ռուբէն. Rubens, m.
Ռուս, Russe.
Ռոքոս, Roch, m.

## Ս

Սադուկեցի. Saducéen, nne.
Սաթինիկ. Sathinigue, f.
Սաքսոն. Saxe.
Սահակ կամ Իսահակ. Isaac, m.
Սամարացի, Samaritain, e.
Սամուէլ. Samuel, m.
Սամփսոն. Samson, m.
Սանատրուկ. Sanatrucc, m.
Սանդուխտ. Santachte.
Սառա. Sara, f.
Սատուրնոս. Saturne.
Սավոյացի, Savoyard, e.
Սարակինոս, Sarrasin, e.
Սարգիս. Segius, m.
Սարիմ. Sèrim
Սարմատացի, Sarmate.
Սարդանապաղ. Sardanapale.
Սաւուղ. Saül, m.
Սեբաստիանոս. Sébastien, m.
Սեդրակ. Sedrag.
Սեղբեստրոս. Sylvestre, m.
Սենեքերիմ. Sénèque, m.
Սեսոստր. Sésostris, m.
Սեպուհ. Sebouhe, m.
Սերովբէ. Séraphin, m.
Սեւերիանոս. Sévère, m.
Սիմէոն. Simon, m.
Սինէացի կամ Չինացի, Chinois, e.
Սիկիլիացի, Sicilien, nne.
Սիսակ. Sissag, m.
Սիրակուսացի, Syracusain, e.
Սիւրիացի, Syrien, nne; Assyrien, nne.
Սլաւեան, Scelave.
Սկիւթացի Scythe.
Սկովտիացի, Écossais, e.
Սմբատ. Sembat, m.
Սոկրատ. Socrate, m.
Սողոմոն. Salomon, m.
Սողոն. Solon, m.
Սուրէն. Souren, m.
Սուլթան. Sultan, e.
Սուքիաս. Sukias, m.
Սոփի կամ Սոփիայ. Sophie, f.
Սպանիացի, Espagnol, e.
Սպարտացի, Spartiate.
Սրբուհի. Serpouhy, f. (sainte).
Ստեփան. Etienne, m.

## Վ

Վահագն. Hercule, m.
Վահան. Vahan, m.
Վահէ. Vahé, m.
Վահրամ. Vahram, m.
Վաղարշ Valarsès, m.
Վաղարշակ. Valarsaces. m.
Վաղենտինեայ. Valentine, f.
Վաղենտիանոս. Valentin, m.

Վալերիանոս. Valérien, m.
Վառվառիա. Barbe, f.
Վասակ. Vasag, m.
Վասիլ. Basile, m.
Վասիլուհի. Vacilouhy (reine), f.
Վարդ. Varte, (rose), f.
Վարդան. Vartan, m.
Վարդուհի. Rosine, f.
Վարդենի, Verteny, (rosière), f.
Վեսպասիանոս. Vespasien, m.
Վենետիկեցի, Vénitien, nne.
Վիրգիլիոս. Virgile, m.
Վիրգինէ. Virginie, f.
Վրացի. Géorgien, ne.
Վռամշապուհ. Vramsapor.
Վրթանէս. Verthanes.

## Տ

Տաճիկ. Turc, turque.
Տելեմաք. Télémaque, m.
Տերմոսիրիս. Termosiris, m.
Տիբերիոս. Tchère, m.
Տիգրան. Tigran.
Տիգրանուհի. Tigranouhy, f.
Տիմոթէոս. Timothê, m.
Տիմոկրատ. Timograte, m.
Տիտոս. Titus, m.
Տիրան. Diran, m.
Տիրուհի. Dirouhy, (madame ou signorina).
Տիւրացի. Tyrien, nne.
Տոբիթ. Tobie, m.
Տրայիանոս. Trajan, m.
Տրդատ. Tridate.
Տրիտոն. Triton, m.
Տրովադացի, Troyen, nne.

## Փ

Փաղանթ. Phalante, m.
Փալլաս. Pallas, f.
Փառանձեմ. Pharantzeme, m.
Փառնակ. Pharnace, m.
Փարիզեցի, Parisien, nne.
Փարաւոն. Pharaon, m.
Փիլիպպոս. Philippe, m.
Փիլոկլէս. Philoclès, m.
Փիլոկտէտ. Philoctète, m.
Փիւնիկեցի. Phénicien, nne.
Փղշտացի. Philistin, c.
Փոլիմնէ. Polyme, f.
Փոտոս. Photus, m.
Փրափիոն. Praphione, m.
Փրուսացի, Prussien, nne.

## Ք

Քարոն. Caron. m.
Քսենոփոն. Xénophon, m.
Քսերքսէս. Xercès, m.
Քրիստափոր. Christophle, m.
ՔՐԻՍՏՈՍ. CHRIST, m.
Քրիստոփոր Գոլոմպ. Christophe Colombe, m.

## Օ

Օգոստոս. Auguste, m.
Օգոստինէ. Augustine, f.
Օշին. Auchin, m.
Օքսենտիոս. Auxend, m.

## Ֆ

Ֆրակուլ, Fragul, m.
Ֆրանսուա. François, sc.



ԱՌԱՋՆՈՐԴ

# ՖՌԱՆՍԵՐԷՆ

## ԼԵԶՈՒԻ



ՅԱՂԱԳՍ ՃԱՄԲՈՐԴԱՑ

Ի ՖՌԱՆՍԱ



ՓԱՐԻԶ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ԱՐԱՄԵԱՆ

1860

# ԱԶԴ

Դէպ ի Ֆռանսա եղած ճամբորդութիւնները կարգէ դուրս յաճախեցան ամէն ազգաց կողմանէ. եւ գրեթէ բոլորին փափաքն ու նպատակն է՝ Փարիզ քաղաքը կամ լոկ տեսնել, կամ անոր մէջի արհեստներն ու գիտութիւնները աչքէ անցընել, եւ կամ առեւտրական գործերն անձամբ հսկել: — Այս երեւելի քաղաքը (որ այժմ, իբր երկրորդական, *Հանդիպատեղ Իշխանաց* անունն իրաւամբ ըստացաւ,) Մերազնեայց ալ հիւրընկալ լինելով՝ որտերնին յուշիկ յուշիկ գրաւեց, եւ այժմ Հայաստանի կողմերէն երթեւեկողք օրըստօրէ բազմացան: — Ասոնց մէջ շատերուն Ֆռանսերէն լեզուին անտեղեակ լինելովը՝ դժուարութիւն կրելնին տեսանք, եւ ուզեցինք այս կերպիւ փոքր ինչ դիւրացընել՝ մեր Հայրենակցաց ճամբորդութիւնը:

Այս միջոցաւ յուսանք նաեւ թէ Պատանիք եւս օգտին Համառօտագոյն Զրուցատրութենէս, որ թէպէտ ճամբոր-

դաց մասնաւորեալ՝ իսկ այլ եւ այլ խնդիրներով նիւթն ալ փոքր ինչ ընդհանրացած է. եւ զոր *դիւրատար բառգրքի* մը հետն ունենալով՝ Պատանիք ալ ճամբորդաց պէս՝ կարող են պէտք եղած ատեն անոր բառերը դիւրութեամբ փոփոխել ու զանազան ոճեր ձեւացընելով խօսիլ:

Ճ. Ա.

Փարիզ, 20 հոկտեմբեր 1860.



ԱՌԱՋՆՈՐԴ

# ՖՐԱՆՍԵՐԷՆ ԼԵԶՈՒԻ

## ՅԱՂԱԳՍ ՃԱՄԲՈՐԴԱՑ
## Ի ՖՐԱՆՍԱ

| Ա | I |
|---|---|
| Պարոն, Մարսիլիայի շոգենաւն այս է: | Monsieur, est-ce bien là le bateau de Marseille ? |
| Այո՛ Պարոն. ճամբո՞րդ էք: | Oui, Monsieur; vous vous embarquez ? |
| Մարսիլիա պիտի երթամ: | Je m'embarque pour Marseille. |
| Խնդրեմ որ սնտուկներս վեր հանելու օգնէք ինծի: | Veuillez m'aider à monter mes bagages. |
| Քանի՞ սնտուկ ունիք: | Qu'avez-vous en fait de bagages ? |
| Երկու սնտուկ եւ մէկ ալ ձեռարկ (*չանթա*) ունիմ: | J'ai deux malles et un sac de nuit. |
| Սնտուկներս վար իջեցընել տուէք: | Faites descendre mes malles. |
| Ձեռարկս վար իջեցընել մի՛ տաք: — Խուցիկիս մէջ պիտի առնեմ զայն: | Ne faites pas descendre mon sac de nuit. — Je le prendrai avec moi dans ma cabine. |
| Խուցիկս ցոյց տուէք ինծի: | Veuillez me montrer ma cabine. |
| Առաջի՞ն՝ թէ երկրորդ կարգին մէջ է տեղերնիդ: | Est-ce à la première ou à la seconde classe ? |
| Երկրորդ կարգին, Պարոն: | C'est à la seconde classe, M. |

| | |
|---|---|
| Հրամեցէք, ետեւէս եկէք : | Donnez-vous la peine de me suivre. |
| Նայեցէք որ չիյնիք : | Prenez garde de tomber. |
| Այս տեղ շատ մութ է : | On ne voit pas trop clair ici. |
| Միայն պառկելու համար է, Պարոն : | Monsieur, c'est pour vous coucher seulement. |
| Ամէն պիտոյք հոս կայ, բայց շիշ մի ջուր՝ պակաս է : | Il y a ici tout ce qu'il me faut, excepté une carafe d'eau. |
| Ահաւասիկ Պարոն, շիշ մըն ալ ջուր : | Monsieur, voici une carafe d'eau. |
| Խնդրեմ որ ձեռւարկս վերէն բերէք : | Descendez-moi mon sac de nuit, s'il vous plait. |
| Ո՞ւր դրած էք : | Où l'avez-vous laissé ? |
| Մեծ կայմին քովը դրած եմ. — Բայց զգուշութեամբ բերէք. — Մէջը դիւրաբեկ բաներ կան : | Je l'ai laissé à côté du grand mât. — Mais descendez le avec précaution. — Il contient des objets fragiles. |
| Սպասաւո՛ր. շիշ մի *Պօրտօի* գինի տուր մեզի: | Garçon, donnez-nous une bouteille de Bordeaux. |
| Քանի մը գաւաթ ալ տուր : | Donnez-nous quelques verres aussi. |
| Ե՞րբ պիտի մեկնինք : | Quand partons-nous? |
| Հինգին պիտի մեկնինք : | Nous partons à cinq heures. |
| Անանկ է նէ կէս ժամէն պիտի մեկնինք : | Alors nous partirons dans une demie-heure. |
| Այո՛ Պարոն, վասնզի ժամը չորս ու կէսն է : | Oui Monsieur, car il est quatre heures et demie. |
| Ածուխն առնելնուս պէս պիտի մեկնինք : | Nous partirons dès que nous aurons fait le charbon. |

| | |
|---|---|
| Դեսպանատան նամակներուն եւ նամակատան սնտուկին սպասեմք ։ | Nous attendons les dépêches de l'Ambassade et la malle de poste. |
| Ահաւասիկ ուրիշ ճամբորդներ ալ ։ | Voici encore d'autres passagers. |
| Թէ որ քանի մը վայրկեան ալ ուշանային, շոգենաւին չպիտի հասնէին ։ | Quelques minutes plus tard et ils auraient manqué le bateau. |
| Նաւին առաջակողմը ինչ է ըրածնին ։ | Que fait-on à l'avent ? |
| Երկաթն է զոր վեր առնեն. — Ահաւասիկ Հրամանատարը վեր ելաւ ։ | On lève l'ancre . — Voici le commandant qui monte. |
| Ահա ղեկավարն ալ իր տեղն անցաւ ։ | Voici le timonier qui prend sa place. |
| Նաւահանգիստէն դժուարաւ պիտի ելնենք, վասնզի շատ նաւ կայ ։ | La sortie du port sera difficile, car il y a beaucoup de navires. |
| Յուշիկ յառաջանալէն ուրիշ ճար չկայ ։ | Nous ne pouvons faire autrement que de sortir lentement. |
| Մեկնելու ժամն ալ անցաւ ։ | L'heure est déjà passée. |
| Ասկէց աւելի ճշդութիւն չը կրնար ըլլալ ։ | On ne peut être plus éxact. |
| Ինչո՞ւ զանգակը զարնէք ։ | Pourquoi sonnez-vous ? |
| Նաւուն մեկնիլն իմացընելու համար է ։ | C'est pour annoncer le départ. |
| Ճանբորդներուն յուղարկաւորութեան եկողները դուրս հանելու համար է ։ | C'est pour faire sortir les personnes qui sont venues reconduire les passagers. |
| Ահաւասիկ տղայ մը որ լայ. | Voici un enfant qui pleure. |

| | |
|---|---|
| — Հօրմէն զատուելուն համար է : | — C'est par ce qu'il se sépare de son père. |
| Ճամբայ ելնենք նէ այնպէս չըմընար : | Une fois parti, il ne sera plus aussi triste. |
| Ճանբուն մէջ իրեն զբօսանք պակաս չեն : | Il trouvera de quoi se distraire en route. |
| Ահաւասիկ Նաւապետն որ մեկնումը հրամայէ : | Voici le capitaine qui commande le départ. |
| Մեքենան սկսաւ դառնալ : | La machine commence à tourner. |
| Ահա ելանք. — Ահա ճամբայ ելանք : | Nous voilà partis. — Nous voici en route. |
| Յուսամ որ ճամբորդութիւննիս յաջող պիտի ըլլայ : | J'espère que notre traversée sera heureuse. |
| Հովը մեզի հակառակ չէ. — Հովը մեզի յաջող է : | Le vent ne nous est pas contraire. — Le vent nous est favorable. |
| Ճամբորդութեան եղանակ է հիմա : | C'est la saison des voyages. |
| Վախնալու բան չըկայ : | Il n'y a rien à craindre. |
| Կոստանդնուպօլիս հորիզոնին մէջ աներեւութանալ սկսաւ : | Voilà Constantinople qui se perd à l'horison. |
| Կոստանդնուպօլսոյ դիրքէն գեղեցիկ բան չըկայ : | Rien n'est plus beau que la vue de Constantinople. |
| Մանաւանդ երբ հեռուէն դիտելու ըլլաս, վասնզի շատ կեղտոտ քաղաք է առ այժմ : | Surtout quand on la regarde d'une certaine distance, car c'est une ville, qui est joliment mal-propre pour le quart d'heure. |
| Տանկաստանի բոլոր քաղաքները նոյն վիճակի մէջ են : | Toutes les villes de la Turquie en sont là. |

| | |
|---|---|
| Յուսամ որ այս վիճակին մէջ չմրնայ : | Il faut espérer que cela ne restera pas comme cela. |
| Այո́, վասնզի այս վիճակն առողջարար չէ : | Oui, car cet état de chose n'est pas trop sanitaire. |
| Ընթրիքի զանգակն է : | On sonne le dîner. |
| Պարոն, ահաւասիկ ձեր տեղը: | Monsieur, voici votre place. |
| Այս ափսէն փոխեցէք : | Changez-moi cette assiette. |
| Գինի լեցընե՞մ ձեզի, Պարոն: | Vous offrirais-je à boire, Monsieur ? |
| Շնորհակալ եմ, Պարոն, գինի չեմ խմեր : | Merci, Monsieur, je ne bois pas de vin. |
| Գինին գլուխս դարձընէ : | Le vin me monte à la tête. |
| Պոլսոյ մէջ ջուրէն ուրիշ բան չեմք խմեր : | Nous ne buvons que de l'eau à Constantinople. |
| Փարիզի մէջ պիտի ստիպուիք գինիի վարժուելոյ : | Vous serez forcé de contracter l'usage du vin à Paris. |
| Պարոն, գետնախնձոր չէ՞ք ուզեր: | Monsieur ne veut pas de pommes de terre ? |
| Քիչ մը տուր: | Donnez-m'en un peu. |
| Նաւուն մէջի կերակուրները խիստ աղէկ են: | La nourriture est excellente à bord. |
| Ախորժակնիս բաց ըլլալուն համար է: | C'est parceque nous avons bon appétit. |
| Ծովի օդն ախորժակ բացող է: | L'air de la mer donne de l'appétit. |
| Սալաթին մէջ շատ մանանեխ կայ: | Il y a trop de moutarde dans la salade. |
| Բաւական քացախ չկայ: | Il n'y a pas assez de vinaigre. |
| Քիչ մը սառ տուր մեզի: | Donnez-nous un peu de [glace.] |

| | |
|---|---|
| Ջուրը բաւական պաղ չէ: | L'eau n'est pas assez fraîche. |
| Ո՞ր պտուղէն ախորժիք: | Quel dessert préferez-vous? |
| Դեղձերն ինծի անցուցէք: | Passez-moi les pêches. |
| Քահվէ մի տուէք ինծի: | Donnez-moi du café. |
| Շաքար դրէք, Պարոն: | Sucrez-vous, Monsieur. |
| Շնորհակալ եմ. առանց շաքարի քահվէն աւելի ախորժելի է ինծի: | Merci, j'aime mieux le café sans sucre. |
| Խուցին մէջ ծխելն արգիլուած է: | Il est défendu de fumer dans la cabine. |
| Վեր ելնեմ սիկար մի ծխելու համար: | Je vais monter pour fumer un cigare. |
| Ես ալ գլանիկ մի ծխելու: | Moi aussi, pour fumer une cigarette. |
| Օդն սկսաւ զովանալ: | Il commence à faire frais. |
| Լուսինը խիստ պայծառ է: | Il fait un clair de lune superbe. |
| Ամպ անգամ չկայ: | Il n'y a pas un seul nuage. |
| Աղէկ նշան է: | C'est d'un bon augure. |
| Դաշնակի ձայնին ուշ դըրի՞ք. — Զալօղը կին մըն է: | Entendez-vous le son du piano. — C'est une dame qui joue. |
| Կարծես թէ սրահի մը մէջ ենք: | On se croirait dans un salon. |
| Նաւու մէջի կենակցութիւնը կարելի եղածին չափ հաճելի ընելու համար է: | On cherche à rendre le séjour du bord aussi agréable que possible. |
| Նաւերնիս զայուկ է. — Արագութեամբ առաջ երթալու վրայ ենք: | Notre bateau marche bien. — Nous avançons rapidement. |
| Մեքենան խիստ ուժով է: | La machine est très forte. |

| | |
|---|---|
| Այս նաւը խելաձնիւեայ է : | C'est un bateau à hélice. |
| Մեքենային քանի՞ ձիու ոյժ ունի : | Quelle est la force de sa machine ? |
| Ասեն թէ երեք հարիւր ձիու ոյժ ունի : | On la dit d'une force de trois cent chevaux. |
| Մեքենաները ինչպէս մաքուր պահված են : | Comme les machines sont bien entretenues ! |
| Նաւուն մէջ շատ մաքրութիւն կայ : | La plus grande propreté règne à bord. |
| Իւղի հոտ մը կայ : | Je sens l'odeur de l'huile. |
| Վերջապէս այս հոտին պիտի վարժիմք : | Nous finirons par nous y habituer. |
| Վաղը կէս օրէն յետոյ Տարտանել պիտի հասնիմք : | Nous arriverons aux Dardanelles demain dans l'après-midi. |
| Գուցէ առաջ ալ : | Peut être y arriverons-nous même avant. |
| Սկսայ մրսիլ : | Je commence à avoir froid. |
| Սենեակս պիտի քաշվիմ : | Je vais me retirer. |
| Կէս գիշերը մօտ է : | Il est bientôt minuit. |
| Պառկելէս առաջ քիչ մը պիտի կարդամ : | Je lirai un peu avant de me coucher. |
| Նաւուն մէջ կարդալէն ուրիշ զբաղմունք չկայ : | C'est la seule occupation à laquelle on puisse se livrer à bord. |
| Թուղթ ալ կրնանք խաղալ : | On peut aussi jouer aux cartes. |
| Գիշեր բարի, Պարոն : | Monsieur, je vous souhaite une bonne nuit. |
| Լոյս բարի, Պարոն : | Bonne nuit, Monsieur. |
| Սպասաւո՛ր, ճրագ մի տուր : | Garçon, donnez une bougie. |

| | |
|---|---|
| Վաղն առտու ժամը վեցին արթնցու զիս : | Reveillez moi demain matin à six heures. |
| Արեւին ծագիլը տեսնալու համար վեր պիտի ելնեմ : | Je monterai pour voir le lever du soleil. |
| Աս անկողինք բռնըւա՞ծ են· | Ces lits sont-ils occupés ? |
| Մէկը միայն բռնըւած է· | Il n'y en a qu'un qui est occupé. |
| Խուցի ընկերդ Պելճիքացի մըն է : | Vous avez un Belge pour camarade de cabine. |
| Լուսամուտը գոցէ, որ չըմրսիմ : | Fermez la fenêtre, je crains le froid. |
| Աթոռ մը տուր որ հագուստներս վրան դնեմ : | Donnez-moi une chaise pour mettre mes habits. |
| Վաղն առտու կօշիկներս մաքրէ : | Vous me cirerez les bottes demain matin. |
| Ուրիշ մըն ալ պէտք ունի՞ք : | Voulez-vous avoir encore une serviette? |
| Շնորհ. մէկ հատը բաւ է : | Merci, j'en ai assez d'une. |
| Այս անկողինն ալ խիստ նեղ է. — Զգուշանալու եմ որ գլուխս առաստաղին չզարնեմ : | Ce lit n'est pas trop large. — Il faut que je prenne garde de me cogner la tète. |
| Քանի մը օրվան համար է միայն : | Ce n'est que pour quelques jours. |
| Ճրագը մարէ : | Soufflez la bougie. |

## Բ — II

| | |
|---|---|
| Ահաւասիկ Տարտանէլի նեղուցը հասանք : | Nous voici dans le détroit des Dardanelles. |
| Նայէ աս բերդերը՛քէ ու լաւ դիրք ունին, բայց ինչպէս երեւ ծըրգված են : | Voyez comme ces forts sont bien placés, mais mal entretenus. |

| | |
|---|---|
| Անոնց բոլորտիքը տեսնելու բան մը կա՞յ : | Y a-t-il quelque chose à voir dans le voisinage ? |
| Հոդ է ամանի գործարաններ կան, որ տեղւոյն մասնաւոր արուեստն է : | Il y a des fabriques de poterie, qui est la spécialité de l'endroit. |
| Վաղը Փիրէ պիտի հասնինք : | Nous arriverons demain au Pirée. |
| Փիրէն Աթէնքի նաւահանգիստն է : | Le Pirée est le port d'Athènes. |
| Փիրէէն Աթէնք երթալու համար երկաթուղի կա՞յ : | Y a-t-il un chemin de fer du Pirée à Athènes ? |
| Ոչ Պարոն, բայց մեծ ու փոքր կառքեր կան, որ Փիրէէն Աթէնք երթեւեկեն : | Non Monsieur, mais il y a des diligences et des voitures qui font le service entre le Pirée et Athènes. |
| Այս ճամբան շատ մաքուր պահուած է : | Cette route est fort bien entretenue. |
| Թեզէոսի տաճարը տեսնելու պիտի երթանք : | Nous irons visiter le temple de Thesée. |
| Երթանք Պարթենոնը, Քոլիզէն եւ Արամազդայ տաճարը տեսնելու : | Allons voir le Parthénon, le Colisée et le temple de Jupiter. |
| Աս ինչ շէնք է : | Quel est ce monument ? |
| Թեզէոսին տաճարն է : | C'est le temple de Thesée. |
| Պա՛հ. այնչափ փոքրիկ չէի կարծեր : | Bah ! je ne le croyais pas si petit que çela. |
| Կարծեցիր թէ Աթէնքը պատմութեան մէջ գրուածին պէս պիտի գտնայիր : | Vous croyiez donc trouver Athènes, telle qu'on la décrit dans l'histoire ? |
| Քաղաքը գրեթէ բոլորովին նորէն շիներ են : | La ville a été presque'entièrement reconstruite. |

| | |
|---|---|
| Ահաւասիկ արքային պալատը : | Voici le palais du roi. |
| Երթանք Ակրոպոլի աւերակները տեսնենք եւ իսկոյն դառնանք. | Allons visiter les ruines de l'Acropole et nous reviendrons de suite. |
| Ժամը քանի՞ է. | Quelle heure est-il? |
| Ժամանակը հասած է : | L'heure est déjà avancée. |
| Նաւի մեկնելուն կըրնանք հասնիլ: | Nous arriverons au bateau avant le départ. |
| Պէտք չէ որ նաւէն ետ մնանք: | Il ne faut pas que nous le manquions. |
| Քամի ելաւ : | Le vent s'élève. |
| Ծովը խիստ բորբոքած է: | La mer est bien grosse. |
| Նաւուն շարժումը սկսաւ զիս անհանգստացընել: | Le mouvement du bateau m'incommode déjà. |
| Հիւսիսային — Հարաւային — Արեւելեան — Արեւմըտեան հովն է : | C'est le vent du nord — du sud — de l'est — de l'ouest. |
| Գլուխս սկսաւ դառնալ. — Սիրտս ալ ցաւիլ : | La tête me tourne. — J'ai mal au cœur. |
| Գլուխս ցաւ ունիմ : | J'ai mal à la tête. |
| Խուցիկդ իջիր : | Descendez dans votre cabine. |
| Նաւուն մէջ տեղը կեցիր: | Tenez-vous au milieu du bateau. |
| Կռնակիդ վրայ պառկէ : | Couchez-vous sur le dos. |
| Հանդարտ կեցիր. — Մ՚ երերար : | Tenez-vous bien tranquille — Ne bougez pas. |
| Աչքերդ գոցէ. — Ոտքդ լաւ մը երկընցուր: | Fermez les yeux. — Allongez bien vos jambes. |
| Ցաւս սաստիկ է : | Je souffre horriblement. |

| | |
|---|---|
| Սիրտս ետ պիտի գայ : | J'ai envie de rendre. |
| Աղաչեմ կոնք (չէնէն) մը բերէք ինծի : | Apportez-moi une cuvette, je vous prie. |
| Գաւաթ մը լիմոնատ տուէք : | Donnez-moi un verre de limonade. |
| Ջուրով խառնուած քիչ մը օղի խմեցէք : | Prenez un peu d'eau de vie avec de l'eau. |
| Բժիշկը կանչեցէք : | Appelez le Docteur. |
| Բժիշկը պառկեր է, կարծեմ նա ալ հիւանդ է : | Le Docteur est couché; je crois qu'il est malade aussi. |
| Ահաւասիկ *Տօքթօրն* եկաւ : | Voici le Docteur. |
| *Տօքթօր*, խնդրեմ սա սիրտս հանդարտեցնելու բան մը տուր : | Docteur, je vous prie de me donner quelque chose de calmant. |
| Տեսնեմ ինչ ունիք . — էհ! ես ալ կարծեցի թէ իրաւցընէ հիւանդ էք . — Ծովը բռներ է ձեզ : | Voyons, qu'est ce que vous avez? — Ah! bah! je vous croyais sérieusement malade. — Vous avez le mal de mer. |
| Այդպէս ըլլալը ես ալ գիտեմ. դեղը գիտէք նէ մն ըսէք : | Je le sais bien, parbleu! Mais en connaissez-vous le remède? |
| Բարեկամս, ես ալ քեզի պէս հիւանդեմ . թէ որ դեղ մը գիտնայի՝ հարկաւ ինքզինքս պիտի դարմանէի : | Mon chèr Monsieur, je suis aussi malade que vous; si je connaisais un reméde, croyez bien que je commencerai par me soigner moi-même. |
| Անանկ է նէ ինչու հոս կեցեր էք, գնացէք տեղերնիդ : | Que faites-vous alors ici. — Allez donc vous coucher. |
| Ասոր խօսք չկայ, որովհետեւ | A la bonne heure! car je ne |

| | |
|---|---|
| ճար ալ չունիմ կենալու : | me sens pas à mon aise. |
| Քիչ մը աղէկցայ.— Քիչ մը ինքզինքս գտայ : | Je me sens un peu mieux. |
| Այս երեկոյին կերակուր չը՛ պիտի ուտեմ : | Je ne dînerai pas ce soir. |
| Նաւուն երերալն է որ այս պէս աւրեց զիս : | C'est le tangage qui m'a donné ce mal. |
| Վնաս չունի, շատ չը՛քշեր : | Cela ne sera rien. |
| Իտալիայի եզերքը սկսաւ երեւնալ : | On distingue déjà les côtes d'Italie. |
| Աստուած հեռի ընէ.... այս ծովը տանելու բան չէ : | Dieu merci... j'en ai assez de cette mer. |
| Ահաւանիկ Էթնայ լեռան գագաթնալսկսաւ երեւիլ : | Voilà le sommet du mont d'Etna qui commence à paraître. |
| Մեսինա հասանք : | Sommes-nous arrivés à Messine ? |
| Դեռ վեց մղոն ունինք հասնելու համար : | Il nous reste encore six lieues à faire. |
| Ինչ՜ աղուորիկ քաղաք է : | Quelle jolie petite ville ! |
| Ինչ՜ գեղեցիկ դիրք ունի : | Quelle gentille situation ! |
| Եւ ինչ աղուոր տեսարան : | Et quelle belle vue ! |
| Պարտէզներն ; սքանչելի են : | Ces jardins sont superbes! |
| Նաւահանգիստը բաւական մեծ է : | Le port est assez grand. |
| Ահաւասիկ Մարսիլեայէն եկող շոգենաւը : | Voici le bateau à vapeur venant de Marseille. |
| Երկու նաւերն սկսան զիրար բարեւել : | Les deux bateaux se saluent. |
| Ինչ՞ շուտով դարձար : Քա- | Vous voilà déjà de retour? |

| | |
|---|---|
| Քաղաքին մէջ մեծ բան մը չտեսար կարծեմ: | Vous n'avez pas vu grand' chose dans la ville, je crois. |
| Այո́, բուստերէն (մերճան) եւ վաճառողներէն ուրիշ բան չտեսայ: | Non, rien que des coraux et des marchands. |
| Վաղը Սարտենիայի կղզոյն պիտի մօտենանք: | Demain nous serons près de l'île de Sardaigne. |
| Ինչ՞ է սա կղզոյն անունը: | Comment appelez-vous cette île ? |
| Ինչ՞ է այն հեռուէն տեսնը-ւած լոյսը: | Quelle est cette lumière que l'on aperçoit de loin? |
| Սթռօմպօլի հրաբուխն է: | C'est le volcan de Stromboli. |
| Կէս գիշերուան հոն պիտի հասնինք: | Nous y arriverons à minuit. |
| Մինչեւ որ զանի մօտէն չը տեսնեմ չպիտի պառկիմ: | Je ne me coucherai pas avant de l'avoir vu de près. |
| Այս հրաբուխին բերանը լայն չերեւիր: | Le cratère de ce volcan ne parait pas très large. |
| Ահաւասիկ ձկնորսի քանի մը տնակներ: | Voici quelques cabanes de pêcheurs. |
| Ահաւասիկ Սթրօմպօլի մօտը հասանք: | Nous voici près de Stromboli. |
| Բոցը տեսա՞ր: | Voyez vous l'éruption? |
| Այո́, բայց քիչ տեւեց. | Oui, mais elle n'a pas duré longtemps. |
| Հիմա կրկին պիտի տեսնես. | Vous allez la revoir tout à [l'heure.] |
| Նայէ՛, նայէ՛: | Regardez! regardez! |
| Հա՛, այս անգամին սաստկութեանը խօսք չկայ: | Ah! cette fois ci par-exemple, elle était bien forte. |

| | |
|---|---|
| Ալ հիմա երթանք պառկինք: | Allons nous coucher maintenant. |
| Քորսիքա եւ Սարտենիա կղզիները տեսնել չէ՞ք ուզեր: | Vous ne voulez donc pas voir les îles de Corse et de Sardaigne ? |
| Չէ, շնորհակալ եմ, քունս ծանրացաւ: | Non, merci, j'ai bien sommeil. |
| Երբ Մարսիլիա պիտի հասնինք: | Quand arriverons-nous à Marseille ? |
| Վաղը ցերեկին: | Nous y arriverons après-demain dans la journée. |
| Ծովն սկսաւ սաստկանալ: | La mer devient de plus en plus grosse. |
| Կարծեմ թէ նորէն հիւանդ պիտի պառկիմ: | Je crois que je tomberai encore malade. |
| *Միզթրալ* ըսված հովն է, որ Մարսիլիոյ կողմերէն անպակաս է: | C'est le mistral. — C'est le vent qui souffle ordinairement à Marseille. |
| Ալիքները մեծ՝ բայց կանոնաւոր են: | Les vagues sont grandes mais régulières. |
| Ֆրանսայի եզերքն սկսան տեսնըվիլ: | On aperçoit les côtes de France. |
| Աս ժայռերը շատ վտանգաւոր են: | Ces rochers sont très dangereux. |
| Ահաւասիկ Մարսիլեային նաւահանգիստը հասանք: | Nous voici dans le port de Marseille. |
| Շատ ուրախ եմ: | Je n'en suis pas fâché. |
| Ճամբան ամենեւին վտանգ մը, — փորձանք մը չըպատահեցաւ: | Nous n'avons eu aucun accident, aucune avarie en route. |

| Գ | III |
| --- | --- |
| Էն աղէկ պանդոկը որն է: | Quel est le meilleur hôtel? |
| *Այս ինչ*, պանդոկն է: | C'est l'hôtel de..... |
| Հոն շատ հանգիստ տեղ է: | Vous y serez très-bien. |
| Մէկ գիշերուան համար սենեակ մը պէտք է ինծի: | Il me faut une chambre pour une nuit. |
| Խնդրեմ շուտով սնտուկներս վեր հանել տուէք: | Ayez la bonté de faire monter mes effets immédiatement. |
| Պարապ սենեակներ ունի՞ք: | Avez-vous des chambres libres? |
| Պանդոկապետն ուզեմ տեսնել: | Je voudrais voir le maître d'hôtel. |
| Պարոն, ինծի սենեակ մը պէտք է, առաջին կամ երկրորդ յարկին վրայ. — Խիստ վեր չեմ ուզեր ելնել: | Monsieur, il me faut une chambre au premier ou au second. — Je n'aime pas monter bien haut. |
| Առաւել հաճելի է ինձ որ սենեակս փողոցի վրայ չըլինի: | Je préfererais une chambre qui ne donnât pas sur la rue. |
| Այնպիսի սենեակ մը տուէք ինծի որ հանգիստ ըլլամ: | Donnez-moi une chambre, où on soit bien tranquille. |
| Սենեակին որպիսութիւնը հոգս չէ, բաւական է որ անկողինը աղէկ ըլլայ: | Je ne regarde pas à la chambre, pourvu que le lit soit bon. |
| Քանի՞ է սենեակին գինը՝ մէկ օրուան համար: | Combien prenez-vous par jour pour une chambre ? |
| Ընթրիքին գինը քանի՞ է: | Combien pour le dîner ? |
| Սենեկիս կրակը վառեցէք: | Faites du feu dans ma chambre. |
| Տանը մէջ բաղնիք կա՞յ: | Y a-t-il des bains dans la maison ? |

| | |
|---|---|
| Սափրիչը վեր կանչէ. — Պիտի ածիլուիմ: | Faites monter le coiffeur. — Je vais me faire raser. |
| Սպասաւորը կանչելու համար ինչպէս ընելու է: | Comment faut-il faire pour appeler le garçon ? |
| Սպասաւորին ուզած ատեննիդ' այս չուանը քաշեցէք: | Monsieur n'a qu'a tirer ce cordon. |
| Կրնամ ընթրիքս սենեակիս մէջ ընել: | Puis-je me faire servir à dîner dans ma chambre? |
| Դուրս պիտի ելնեմ. — Թէ որ մէկը զիս հարցընէ' ըսէք որ մէկ ժամէն պիտի դառնամ: | Je vais sortir. — Si quelqu'un me demande, dites que je serai de retour dans une heure. |
| Ահաւասիկ սենեակիս բանալին: | Voici la clef de ma chambre. |
| Զիս հարցընող եղա՞ւ: | Est-il venu quelqu'un me demander ? |
| Խնդրեմ ճրագ մի տուէք: | Donnez-moi une lumière, s'il vous plaît. |
| Տաքուկ ջուր բերէք, ձեռքս պիտի լուամ: | Apportez-moi de l'eau chaude. Je désire me laver les mains. |
| Սպասաւորը ղրկեցէք, որ հագուստներս մաքրէ: | Envoyez-moi le garçon pour nettoyer mes habits. |
| Մաքսատունը մարդ ղրկեցէք որ ապրանքներս բերէ: | Envoyez à la douane chercher mes effets, et faites les apporter ici. |
| Ինծ երեւի թէ այս սաւանները մաքուր չեն: | Il me semble que ces draps ne sont pas propres. |
| Սաւանները խոնաւ են. — Դեռ չեն չորցած: | Ils sont humides. — Ils ne sont pas secs. |
| Ուրիշ սաւաններ չունի՞ք: | N'en avez-vous pas d'autres? |

| | |
|---|---|
| Ուրիշ վերմակ մըն ալ տուէք: | Donnez-moi encore une couverture. |
| Բարձ մըն ալ եթէ տաք գէշ չլինիր: | Vous ne feriez pas mal de me donner un autre taie d'oreiller. |
| Ոտքերուս համար տաք ջուրի պէտք ունիմ: | Je désire prendre un bain de pieds. |
| Փափաքիմ որ վաղը առաւօտ ժամը վեցին արթունցընէք զիս: | Je désire que l'on vienne. me réveiller demain matin à six heures. |
| Կօշիկներնիդ սենեակնուդ դրանը առջին ձգեցէք, որ սպասաւորը կանուխկէկ մաքրէ: | Mettez vos bottes à la porte de votre chambre, le garçon aura soin de les nettoyer le matin. |
| Գացէք ջուր բերէք ինծի: | Allez me chercher de l'eau. |
| Փարիզ երթալու շոգեկառքի մեկնելուն ատենը երբ է: | A quelle heure part le chemin de fer pour Paris ? |
| Ուղղակի գացող շոգեկառքին մեկնումը միշտ ժամը տասնին է: | Le train exprès part à dix heures précises. |
| Գացէք կառք մի վարձեցէք ինծի: | Allez me louer une voiture. |
| Կառքը եկա՞ւ: | La voiture est-elle arrivée? |
| Սնտուկներս վար իջեցուցէք: | Descendez mes effets. |
| Որքա՞ն է պարտքս: | Combien ai-je à payer ? |
| Քանի՞ ֆռանք ծախք ունիմ: | A combien monte ma dépense ? |
| Ծառային վարձքն ալ այս հաշւոյն մէջն է: | Le service y est-il compris? |
| Կարծեմ այս հաշւոյն մէջ փոքրիկ սխալ մի կայ: | Il me semble qu'il y a une petite erreur. |

| | |
|---|---|
| Փութացէք, վասնզի ժամանակս կարճ է: | Dépêchez-vous. Je n'ai pas de temps à perdre. |
| Ահաւասիկ ստակնիդ: | Voici votre argent. |
| Բարի ճանապարհ, Պարոն: | Bon voyage, Monsieur. |
| Պարոն, բարեհաճեցէք ըսել թէ երկաթուղոյն կայանը ուր է: | Monsieur, voudriez-vous me dire où est l'embarcadère. |
| Գրասենեակը ուր է: | Où est le bureau ? |
| Ճամբուն տոմսակն ուսկի առնելու է: | Où se procure-t-on des billets ? |
| Սնտուկներուն յատկացեալ գրասենեակը ուր կողմն է: | Où est le bureau des bagages ? |
| Փարիզի համար, առաջին կարգի տոմսակ մը պէտք է ինծի: | Il me faut un billet de première classe pour Paris. |
| Քանի՞ ֆռանք վճարելու է: | Combien faut-il payer ? |
| Պարոն, իննսուն եօթը ֆըռանք տալու էք: | Monsieur, vous devez quatre-vingts-dix-sept francs. |
| Ահաւասիկ հարիւր ֆռանք. — Երեք ֆռանք ետ տուէք: | Voici cent francs, rendez-moi trois francs. |
| Սնտուկներս կշռել տուէք եւ ընկալագիրն ինձ յանձնեցէք: | Faites peser mes bagages, et donnez-moi un reçu. |
| Ձեռարկս կառքին մէջ քովիկս պիտի առնեմ: | Je prendrai ce sac de nuit avec moi dans le wagon. |
| Մեկնելուն զանգակը տասը վայրկեանէն պիտի չալվի: | La cloche du départ sonnera dans dix minutes. |
| Առայժմ կայանի սրահին մէջը կենամ: | En attendant je resterai dans la salle d'attente. |

| | |
|---|---|
| Շոգեկառքը լըծվեցաւ : | La locomotive est attachée. |
| Պարոն, գլուխնիդ կառքէն դուրս հանելն արգիլված է: | Monsieur, il ne faut pas mettre la tête hors de la voiture, c'est défendu. |
| Պէտք չէ դռնակը բանալ: | Il ne faut pas ouvrir la portière. |
| Դռնակը բացէք որ դուրս ելնեմ: | Ouvrez la portière que je descende. |
| Կառքը միջանկեալ կայաններն ալ պիտի կենա՞յ: | Le convoi s'arrête-t-il à quelques unes des stations intermédiaires? |
| Այո՛, Պարոն, *Այս ինչ*, տեղը: | Oui Monsieur, il s'arrête à . . . . . |
| Կենալու ատենը որքան է : | Combien y a-t-il de temps d'arrêt? |
| Հինգ վայրկեան ունիք : | Vous avez cinq minutes d'arrêt. |
| Ժամի մը չափ Լիոն պիտի կենանք, ընթրիքի համար: | On s'arrête une heure à Lyon pour dîner. |
| Պարոն,— Տիկին, թէ որ ծըխեմ՝ անհանգիստ չէ՞ք ըլլար մուխէն : | Monsieur, Madame, la fumée vous incommoderait-elle, si je fumais? |
| Ամենեւին, Պարոն : | Nullement, Monsieur. |
| Ներեցէք, Պարոն, բայց ծըխերդին հոտը՝ չեմ կրնար տանիլ: | Excusez moi, Monsieur, mais je ne saurais supporter la fumée du tabac. |
| Պատուհաններուն մէկը կամի՞ք բանալ: | Voulez-vous bien ouvrir une des fenêtres? |
| Ծրարս ձեզ չի՞նեղեր: | Ce paquet vous gêne-t-il? |
| Ամենեւին, Պարոն, շատ հանգիստ եմ: | Du tout, Monsieur, je suis parfaitement à mon aise. |

| | |
|---|---|
| Թէ որ կարենայիք քիչ մը անդին քշել, աւելի հանգիստ պիտի ըլլայի : | Si vous pouviez le pousser un peu plus loin, je serai plus à mon aise. |
| Հաճութիւն ունի՞ք որ դռնակին մօտիկը նստիմ : | Voulez-vous bien me permettre de me placer près de la portière? |
| Հանգիստ եղիք, Պարոն : | A votre aise, Monsieur. |
| Շնորհակալ եմ, այսպէս շատ աղէկ է : | Merci, c'est très bien comme cela. |
| Ինձ այնպէս թուի թէ արագ չենք երթար : | Je trouve que l'on ne va pas assez vite. |
| Պատճառն այն է որ կայարանի մը մօտեցանք : | C'est parce que nous sommes près d'une station. |
| Հիմա ո՞ւր եմք : | Où sommes-nous maintenant? |
| Կէս ճամբան հասա՞նք : | Sommes-nous à moitié chemin ? |
| *Այս ինչ*, տեղէն հեռո՞ւ եմք : | Sommes-nous loin de ... ? |
| Չէ, Պարոն, մէկ քառորդէն պիտի հասնիմք : | Non, Monsieur, nous y serons dans un quart d'heure. |
| Ահա ճանբորդութիւններնուս վերջի կայանը հասանք : | Nous voici arrivés à la dernière station de notre voyage. |
| Ճամբու տոմսակնիդ պատրաստեցէք : | Tenez votre billet tout près. |
| Պէտք է պահապանին ցոյց տալ. — Պէտք է դուրս ելած ատենին ներկայացնել : | Il faut le montrer au conducteur. — Il faut le présenter à la sortie. |
| Պարոն, ահաւասիկ ծրարներուս ընկալագիրը : | Monsieur, voici mon bulletin de bagages. |

| | |
|---|---|
| Մաքսին յայտ տանելու բան ունի՞ք : | Avez-vous quelque chose à déclerer? |
| Սնտուկներդ պիտի նային : | On va visiter vos malles. |
| Ահաւասիկ (սնտուկներուս) բանալին, մէկ հազարա-կրամ ծխերդ ունիմ | Voici la clef, je n'ai qu'un kilogramme de tabac. |
| *Այսքան*, ֆռանք մաքս պիտի վճարէք : | Vous paierez . . . . francs d'octroi. |
| Հիմայ խնդրեմ որ սնտուկ-ներս կառքի մը մէջ դնել տաք : | Maintenant veuillez faire porter mes bagages dans une voiture. |
| Ա՛ռ քու վարձքդ : | Voici pour votre peine. |
| Ձեռարկս կայարանը մոռ-ցայ. վրայի թուանշանը 95 է : | J'ai oublié mon sac de nuit dans la gare; il porte le nº. 95. |
| Ահաւասիկ, Պարոն : | Le voici, Monsieur. |
| Կառավա՛ր, աս սնտուկները կառքին վրայ հանէ: | Cocher, montez ces malles sur la voiture. |
| Զիս, *այս ինչ*, պանդոկը, *այս*, հրապարակը տար : | Conduisez-moi à l'hôtel de... à la place... |
| Ուզածս փողոցի վրայով սենեակ մըն է : | Je voudrais avoir une chambre donnant sur la rue. |
| Ո՞ր յարկը, Պարոն : | A quel étage, Monsieur ? |
| Առաջին կամ երկրորդ յարկը : | Au premier ou au second étage. |
| Երկրորդ յարկին վրայ գեղե-ցիկ սենեակ մ՚ունիմ, ո-րով կրնամ գոհացնել ձեզ: | Monsieur, je puis vous sa-tisfaire; j'ai une jolie chambre au second. |
| Շատ աղէկ, կամի՞ք ինծ ցոյց տալ : | Très-bien, voulez-vous me la faire voir ? |

| | |
|---|---|
| Բարեհաճեցէք վեր ելնել — Ահաւասիկ սենեակը : | Ayez la bonté de monter. — Voici la chambre. |
| Մաքրարան չկայ : | Il n'y a pas de toilette. |
| Պարօն, թէոր սենեակը վարձէք՝ մաքրարան մը կրնայ ղրկիլ : | Monsieur, on vous en montera une, quand vous aurez loué la chambre. |
| Կառքերուն դղրդիւնը ինծ անհանգստութիւն է փոքր ինչ, բայց պիտի վարժիմ: | Le bruit des voitures m'incommodera un peu, mai- je m'y habituerai. |
| Որչա՞փ է սորա վարձքը : | Quel est le prix ? |
| Օրո՞վ ' թէ ամիսով կամիք վարձել: | Voulez-vous la louer au jour ou au mois? |
| Ամիսով պիտի վարձեմ։ | Je la prendrai au mois. |
| Ուրեմն ամիսը քառասունը հինգ ֆռանք պիտի վճարէք : | En ce cas, vous l'aurez à raison de quarante cinq francs par mois ? |
| Այդ գինը ինծի սուղ է : | Ce prix ne me convient pas. |
| Մտածեցէք, Պարօն, որ Փարիզի էն գեղեցիկ փողոցներէն մէկուն մէջ պիտի բնակիք : | Songez, Monsieur, que vous serez logé sur une des plus belles rue de Paris. |
| Քանի մ՚ամիս այս սենեակը բնակելու դիտաւորութիւն ունիմ. — Քառասուն ֆռանքի կրնա՞ք տալ : | J'ai l'intention de l'habiter pendant plusieurs mois. — Pourriez-vous me la laisser à quarante francs? |
| Ցաւ է ինծ ըսելը, բայց չեմ կրնար տալ : | J'en suis bien faché, Monsieur, mais je ne le peux pas. |
| Քառասուն ֆռանքի ձգեմ, բայց մի՛յն պայմանով որ սպասաւորին տրվելիքը դուք վճարէք : | Je vous la laisse pour quarante francs, à condition que vous paierez le service au garçon. |

| | |
|---|---|
| Ուրիշ վերմակ մըն ալ ձգել տուէք, վասնզի տաքուկ ծածկըվիլը սիրեմ : | Faites mettre une seconde couverture, j'aime à être chaudement couvert. |
| Սաւանները փոխելու սովորութիւննիդ երբ է : | Quand changez-vous les draps ? |
| Սովորութիւննիս տասնը հինգ օրն անգամ մը փոխել է : | Nous avons l'habitude de les changer tous les quinze jours. |
| Կրնամ նախաճաշը կամ ընթրիքը սենեկիս մէջ ընել : | Pourrai-je dejeûner ou dîner chez-moi ? |
| Անտարակոյս Պարոն, երբոր ուզէք կերակուրնիդ վեր կրնամք բերել : | Certainement, Monsieur, on montera votre dîner quand vous voudrez. |
| Առաջին յարկը ճաշարան մըն ալ ունիմք : | Nous avons même une table d'hôte au premier. |
| Որովհետեւ ամէն գիշեր դուրս ելնելու եմ, պէտք է որ ուզած ատենս պանդոկին դուռը բանան : | Comme je dois sortir presque tous les soirs, je voudrais qu'on m'ouvrît la porte de l'hôtel à toute heure. |
| Անհոգ եղէք, Պարոն, գիշերը որ ժամուն որ ուզէք կրնաք զարնել ու ներս մտնել : | Ne vous inquietez pas, Monsieur, vous pouvez sonner et rentrer à toute heure de la nuit. |
| Մոմը եւ շաքարը ես ինքս պիտի գնեմ | J'acheterai moi-même la bougie et le sucre. |
| Ինչպէս որ կամիք : | Comme Monsieur le voudra. |
| Սպասաւորները կրնան իմ փոքրիկ յանձնարարութիւններս կատարել : | Vos gens pourront-ils faire mes petites commissions. |

| | |
|---|---|
| Ձեռքէս եկածը պիտի ընեմ զձեզ գոհացունելու համար: | Je ferai tout ce qui dépendra de moi, pour que vous soyez bien content. |
| Հաճեցէք անցագիրնիդ տալ, որ պանդոկի գրքին մէջ արձանագրեմ: | Ayez la bonté de me donner votre passeport, pour l'enrégistrer sur le livre de l'hôtel. |
| **Դ.** | **IV.** |
| Կրնա՞ք ինծի ցոյց տալ, *այս ինչ*, ճամբան—Հաճեցէք ըսել թէ ո՞ր կողմն է, *այս ինչ*, փողոցը: | Voulez-vous bien m'indiquer le chemin de ..... me dire où est le ..... s'il vous plaît? |
| *Այս ինչ*, տեղն երթալու համար էն կարճ ճամբան ո՞րն է: | Quel est le chemin le plus court pour aller à ......? |
| Կրնա՞ք ըսել ինծի թէ, *այս ինչ*, հրապարակէն հեռո՞ւ եմ: | Pourriez-vous me dire si je suis loin de la rue de..? de la place ..? |
| Ասկէ մինչեւ, *այս ինչ* ... որքա՞ն ճամբայ է: | Combien y a-t-il d'ici à..? |
| Նամակատունը պիտի երթամ: | Je vais aller à la poste aux lettres. |
| Ո՞ր կողմէն երթալու է: | Par où faut-il aller? |
| Այս ճամբէն շիտակ գացէք: | Vous n'avez qu'à suivre cette rue, tout droit. |
| Այնուհետեւ՝ աջ կողմը թէ ձախ կողմը դառնալու է: | Faut-il ensuite tourner à droite ou à gauche? |
| Աջդ: | A votre droite. |
| Այնուհետե՞ւ: | Et puis après? |
| Այնուհետեւ, ձախդ: | Après! à votre gauche. |
| Այնուհետե՞ւ: | Et puis après? |

| | |
|---|---|
| Այնուհետեւ. հարցուցէք: | Après! Vous demanderez. |
| Ո՞ր կողմն է, *այս ինչ*, փողոցը: | Où se trouve la rue de ...? |
| Ձախ կողմիդ երրորդ փողոցն է: | C'est la troisième à votre gauche. |
| Պարոն.......*ին* տունը այս կողմերն է: | Est-ce par ici la maison de Monsieur....? |
| Ճամբան շփոթեր էք. — Այն տնէն խիստ հեռի մնացեր էք: | Vous vous êtes écarté du chemin; vous en êtes bien loin. |
| Պարոն.......*ին* բնակարանն հոս է: | Monsieur ...., demeure-t-il ici? |
| Ոչ Պարոն, հոս չբնակիր, պէտք է 40 կամ 44 թիւն երթալ: | Non Monsieur, il ne demeure pas ici, il faut aller au n° 40 ou bien au 44. |
| Կրնա՞ք իր հասցէն ինծի տալ: | Pourriez-vous me donner son adresse? |
| Կամի՞ք ինձ առաջնորդել: | Voulez-vous bien m'y conduire? |
| Մեծաւ հաճութեամբ, Պարոն, եթէ ձեր ուզածն ալ այն է: | Très volontiers, Monsieur, si cela vous fait plaisir. |
| Այո՛, բայց այն պայմանաւ որ աշխատութիւնիդ վը-ճարեմ: | Oui, mais à condition que je vous paierai votre peine. |
| Ձեր հաճութեան պէս ըրէք, Պարոն. — Բարի դիտաւորութեանց դէմ կենալու սովորութիւն չունիմ: | Comme il vous plaira, Monsieur.—Je ne contrarie jamais les bonnes intentions. |
| Այդքան շուտ մ'երթաք: | N'allez pas si vite. |

| | |
|---|---|
| Շատ շնորհապարտ եմ ձեզի: | Je vous suis extrêmement obligé. |
| Այս մօտերս կառքերու կայան մի կա՞յ: | Y a-t-il près d'ici une station de voitures? |
| Առաջին ձախ կողմի փողոցին մէջ կրնաք գտնել: | Vous en trouverez une dans la premiére rue à gauche. |
| Հրապարակին վրայ կառքեր կրնաք գտնել: | Vous trouverez des voitures sur la place de... |
| Կառավա՛ր չորս հոգիի տեղ ունի՞ս: | Cocher, avez-vous quatre places? |
| Միայն երկուքի տեղ ունիմ: | Je n'en ai que deux. |
| *Այս ինչ*, փողոցը, հրապարակը, տար զիս. թիւ 167: | Conduisez-moi à la rue... à la place..... n° 167. |
| Ժամո՞վ՝ եթէ մէկ երթի համար պիտի վարձէք: | Est-ce à l'heure ou à la course que vous me prenez ? |
| Մէկ երթի համար. — Կառքին թիւը տուր: | C'est à la course. — Donnez moi le numéro de votre voiture. |
| Կառավա՛ր ձիերդ քշէ: | Filez vite, cocher. |
| Բաւական շուտ չես երթար: | Vous n'allez pas assez vite. |
| Ձիերս խիստ յոգնած են այսօր: | Mes chevaux sont très fatigués aujourd'hui. |
| Սխալեցա՛ր, 167 թիւը պէտք է զիս տանել եւ ո՛չ 177։ | Vous vous trompez, c'est au numéro 167 et non pas 177. |
| Ահաւասիկ հասանք. | Nous voici arrivés. |
| Ահաւասիկ հինգ ֆրանքնոց մը, մնացածը ետ տուր: | Voici une pièce de cinq francs, rendez moi le reste. |

| | |
|---|---|
| Դեռ մէկ ֆռանք հիսուն սանթիմ պիտի տաք ինծի : | Vous me devez encore un franc cinquante centimes. |
| Բան մը չմոռցա՞ք, Պարոն: | Vous n'oubliez rien, Monsieur? |
| Ո՛չ, ահաւասիկ քսանը հինգ սանթիմ ալ քեզի համար: | Non; voici vingt cinq centimes pour vous. |
| Ե | V |
| Զանգակը դո՞ւք զարկիք : | Monsieur a sonné ? |
| Սպասաւո՛ր, պիտի ճաշեմ : | Garçon, je désire déjeuner. |
| Ինչ՞ է փափաքածնիդ : — Ինչ՞ կամիք ճաշել: | Qu'est-ce que Monsieur désire prendre? — Que désirez-vous manger? |
| Քիչ մը պաղ միս եւ ոչխարի կողակ ուզեմ ուտել : | Je serais bien aise d'avoir un peu de viande froide et une cotelette de mouton. |
| *Պիֆթէք* մը. — Մաս մը սեխ տուէք : | Uu beefteack. — Une tranche de melon. |
| Քիչ մը կարագ տուէք : | Je voudrais avoir un peu de beurre. |
| Խաշած հաւկիթ տուէք ինծի: | Donnez-moi des œufs à la coque. |
| Այս հաւկիթները եփած չեն: | Ces œufs ne sont pas cuits. |
| Շատ պինդ են. — Թարմ չեն. — Առ տար : | Ils sont trop durs. — Ils ne sont pas frais. — Remportez-les. |
| Եղի մէջ եփած երկու հաւկիթ տուր : | Donnez-moi deux œufs sur le plat. |
| Աղամանը ինձ անցուր. | Passez-moi la salière. — |

| | |
|---|---|
| — Մանանեխ տուր ինծի: | Donnez-moi de la moutarde. |
| Սուրճն բաւական ուժով չէ. — Չափազանց թեթեւ է. | Le café n'est pas assez fort. — Il est trop faible. |
| Շօքօլա պիտի խմեմ: | Je prendrai du chocolat. |
| Ջուրո՞վ կամիք խմելը՝ եթէ կաթով: | Comment le prenez-vous? à l'eau ou à la crème |
| Ջուրով. — Կաթովն աւելի ախորժելի է ինծ: | Je le prefère à l'eau, — à la crème. |
| Սեղանը վերցո՛ւ: | Vous pouvez desservir. |
| Այստեղ ճաշարան մը կա՞յ: | Y-a-t-il une table d'hôte ici? |
| Քանիին կերակուր ուտեն: | A quelle heure dîne-t-on? |
| Գինին ալ այս գնոյն մէ՞ջ է: | Le vin est-il compris dans ce prix-là? |
| Ճաշի սրահը երթանք: | Passons dans la salle à manger. |
| Տիկինին աթոռ մի տուէք: | Donnez une chaise à Madame. |
| Բարեհաճեցէք քիչ մը անդին նստիլ: | Auriez-vous la bonté de reculer un peu. |
| Բարեհաճեցէք սա ափսէն ինծ անցընել: | Voulez-vous bien avoir la complaisance de me passer cette assiette. |
| Հաց — Ջուր — Պերոն չունիմ — Սպասաւո՛ր, հաց տուր: | Je n'ai pas de pain. — d'eau. — de fourchette. — Garçon, du pain. |
| Այս ինչի միս է: | Quelle viande est ce ? |
| Ինչ՞ է այս կերակուրին անունը: | Comment applez-vous ce plât? |
| Խնդրեմ սա կերակուրն ինծ անցուցէք. | Auriez-vous la bonté de me passer ce plat. |

| | |
|---|---|
| Ասկէ հրամցընեմ ձեզի: | Vous en offrirais-je? |
| Կամիք աւելի առնել — քիչ մըն ալ: | En voulez-vous d'avantage? — encore? |
| Խիստ շնորհակալ էք, քիչ մըն ալ պիտի առնեմ: | Vous êtes bien bon; j'en prendrai encore un peu. |
| Ոչ, շնորհակալ եմ, ունեցածս բաւական է: | Non, je vous remercie; j'en ai suffisamment. |
| Սպասաւոր, մաքուր դանակ մը տուր: | Garçon, donnez moi un couteau propre. |
| Բանջարեղէն չէք ուտեր: | Est-ce que vous ne mangez pas de légumes? |
| Ուզածնիդ ինչ պտուղ է: — Ո՞ր տեսակ պտուղէն պիտի ուտէք: | Quel dessert désirez-vous? — Que prenez-vous pour dessert? |
| Սպասաւոր, խցահանը բեր: | Garçon, apportez un tire-bouchon. |
| Սա *շամփանյի* շիշին բերանը բաց: | Débouchez cette bouteille de champagne. |
| Այս գինին շատ փրփրուն է: | Ce vin mousse beaucoup. |
| Շատ ամօթով եմ, զգեստնուդ վրայ գինի թափելուս համար: | Je suis vraiment desolé d'avoir versé du vin sur votre habit. |
| Աղաչեմ հոգ մի՛ ընէք, բան մը չէ: | N'y pensez pas, je vous prie: ce n'est rien. |
| Պարոններուն կամքը ինչ է: | Qu'est ce que ces Messieurs désirent. |
| Երկու գաւաթ քաֆէ, պզտիկ գաւաթ մը *քօնեաք* եւ քանի մը սիկար տուր մեզի: | Donnez nous deux demi-tasses, un petit verre de cognac, et des cigares. |
| Ուզած քաֆէս կաթով է. — Առանց կաթի է: | Je prends de la cème dans mon café. — Je le prends sans cr ème. |

| | |
|---|---|
| Գարեջուր ունի՞ք : | Avez-vous de la bière ? |
| Ի՞նչ տեսակ պաղպաղակ ունի՞ք : | Quelle glace avez-vous ? |
| Ելակով — կիտրոնով, — կաթով պաղպաղակ ունի՞ք : | Avez-vous des glaces aux fraises. — au citron. — à la crème ? |
| Կամի՞ք ինձ տալ օրագիրը : | Voulez-vous bien me donner le journal ? |
| Ո՞ր օրագիրն է ուզածնիդ : | Quel journal désirez-vous |
| *Սիէկլը*. — *Օփինիօն Նասիօնալը* տուէք. — *Իլլիւստրասիօնը*. — *Շարիվարին* ինձ անցուցէք : | Donnez-moi le *Siècle*. — L'*Opinion nationale*. — Passez moi l'*Illustration*. — Le *Charivari*. |
| Առայժմ ուրիշի ձեռքն է : | Il est en main pour le moment. |
| Շուտ մը կարդամ ու տամ : | Je ne serai pas long. |
| Գնտախաղ մի ունի՞ք : | Avez-vous un billard ? |
| Գաւաթ մը շաքարեայ ջուր տուէք ինծի , | Donnez-moi un verre d'eau sucré ? |
| Գաւաթ մի չայ—փոնչ—տաք գինի — լիմոնատ տուէք : | Donnez-moi une tasse de thé.— un verre de punch — un verre de vin chaud — de limonade. |
| Սպասաւո՛ր, քանի՞ պիտի վճարեմ : | Garçon, combien ài-je à payer. |
| Գլխարկս ինծի տուր : | Donnez moi mon chapeau. |
| Այս տեղ թատրոն մի կա՞յ : | Y-a-t-il un théâtre ici ? |
| Այո՛, բայց այս միջոցիս չեն խաղար : | Oui, mais on n'y joue pas maintenant. |
| Այս գիշեր թատրոնն երթալու միտք ունի՞ք : | Vous proposez-vous d'eller au spectacle ce soir ? |

| | |
|---|---|
| Այս գիշեր ինչ խաղ կայ : | Que donne-t-on ce soire? |
| Նորուկ խաղ մըն է : | C'est une nouvelle pièce. |
| Գնա երկրորդ յարկը լօժ մը վարձէ ինծի համար : | Allez me retenir une loge des secondes. |
| Երկու աթոռ վարձէ : | Retenez-moi deux stalles, |
| Ներս մտնելու գինն ինչ է : | Quel est le prix d'entrée ? |
| Տեղ չըկայ : | Il n'y a pas de place. |
| Սրահը լեցուն է : | La salle est pleine. |
| Առաջին կարգը կրնամ տեղ ունենալ : | Pourrai-je avoir une place aux premières ? |
| Առաջին կարգի երեք տոմսակ տուէք : | Trois billets des premières, s'il vous plaît. |
| Խաղին յայտարարութիւնը ուր կրնամ գտնել : | Où pourrai-je me procurer le programme? |
| Այս խաղը քանի արարւած է : | Combien d'actes a-t-elle cette pièce ? |
| Այս դերասանին — Դերասանուհիին անունը ինչ է : | Quel est le nom de cet acteur — de cette actrice ? |
| Խնդրեմ որ գլխարկնիդ վար առէք : | Otez votre chapeau, s'il vous plaît. |
| Քիչ մը դուրս ելնելու միտք ունիմ. Կամիք տեղս պահել : | Je voudrais sortir un peu. Auriez-vous la bonté de garder ma place? |
| Պիտի վերադառնաք, Պարոն : | Reviendrez-vous Monsieur? |
| Խաղիկն ալ պիտի տեսնէք : | Restez-vous pour la petite pièce ? |
| Թատրոնը լմննալէն ետքը պիտի գամ զձեզ տեսնել : | J'irai vous retrouver après le spectacle. |
| Գաւազանաց ու անձրեւապահաց տեղն ուր է : | Où est le bureau des cannes et des parapluies ? |

| | |
|---|---|
| Ահաւասիկ 159 թիւը : Գաւազանս տուէք : | Voici le nº 159, donnez-moi ma canne. |
| Ֆիսթանցու թաֆթա գնելու միտք ունիմ : | Je voudrais acheter du taffetas pour robe. |
| Կամիք ցոյց տալ : | Voulez-vous me montrer? |
| Ասոր գինն ինչ է : | Quel est le prix de cet article ? |
| Այս կտաւը — Այս կերպասը քանիի պիտի ծախէք : | Combien vendez-vous cette étoffe — ce tissu ? |
| Քանի է ասոր գինը : | Combien est-ce ? |
| Շատ թանկ է. այդ գինով չեմ ուզեր : | C'est trop cher. Je n'en veux pas à ce prix-là. |
| Վերջի գինն ըսէք : | Dites-moi le dernier prix. |
| Գինը որոշուած է , Պարոն : | Monsieur, c'est un prix fixe. |
| Մեղք որ չկրնանք պիտի համաձայնիլ : | Je regrette que nous ne puissions pas nous arranger. |
| Կամիք ինծի մահուդի (չուխա) ցոյց տալ : | Voulez-vous bien me montrer du drap? |
| Ուզածնիդ ինչ տեսակէն է : | De quelle espèce désirez-vous? |
| Բարակ մահուդէն.— Հասարակ մահուդէն : | Du drap fin. — Du drap ordinaire. |
| Ուզածնիդ ինչ գոյնէն է : | De quelle couleur le désirez-vous ? |
| Քովերնիդ գտնուած բոլոր գոյները ցոյց տուէք : | Montrez-moi toutes les couleurs que vous avez. |
| Մութ գոյնն ինծի առաւել ախորժելի է : | Je préfère les couleurs foncées. |
| Ասիկայ վերջի նորաձեւն է : | Ceci est tout-à-fait à la mode. |

